Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 13 ՀՈՒԼԻՍ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հայրենասիրությունը սոցիալ-պատմական երևույթ է, նա միշտ ունեցել է սոցիալական բովանդակություն և դասակարգային բնույթ: Ուստի պետք է տարբերել զանազան հասարակական դասակարգերի հայրենասիրական գիտակցության ձևերը:

Սովետական հայրենասիրությունը իր էությամբ արմատապես տարբերվում է դասակարգային մյուս հասարակությունների հայրենասիրությունից:

Բուրժուական հասարակության մեջ հայրենասիրությունը անխուսափելիորեն կապված է ազգային կեղեքման, ռասայական դիսկրիմինացիայի, իմպերիալիստական քաղաքականության հետ: Այլ է դրությունը սովետական հասարակության մեջ, որտեղ Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ առհավետ վերջ դրվեց շահագործող դասակարգերին և ստեղծվեց դասակարգային ընդհարումներից ազատ, լիակատար իրավահա-

վասարության և բարեկամության վրա հեն-
ված բազմազգ պետություն, որի հիմքի վրա
էլ զարգացավ սովետական հայրենասիրու-
թյունը:

Սովետական հայրենասիրությունը նոր,
բարձր տիպի հայրենասիրություն է, որը
բնութագրվում է մի շարք արմատական
առանձնահատկություններով:

Սովետական հասարակակարգը իսկա-
կան ժողովրդական հասարակակարգ է, որը
պաշտպանում է բանվորների, գյուղացիների
և ինտելիգենցիայի շահերը:

Ընդհանուր-ժողովրդական այդ շահե-
րին էլ հենց ծառայում է բոլշևիկյան
պարտիայի և Սովետական պետության ամ-
բողջ քաղաքականությունը: Սովետական
պետությունը պաշտպանում է աշխատավոր-
ների շահերը: Այստեղից էլ բխում է այն
խորին սերն ու նվիրվածությունը, որ սովե-
տական ժողովուրդը տածում է դեպի իր
հարազատ պետությունը, որը հանդիսանում
է սովետական հայրենասիրության յուրա-
հատուկ, բնորոշ գծերից մեկը:

Սովետական ժողովրդի առաջավոր ջոկա-
տը բոլշևիկյան պարտիան է: Բոլշևիկյան
պարտիայի ղեկավարության շնորհիվ մեր
երկրի աշխատավորները կառուցեցին սո-



ցիալիստական հասարակություն, ստեղծեցին
ունևոր ու երջանիկ կյանք: Բոլշևիկյան պար-
տիայի քաղաքականությունը արտահայտում
է մեր ժողովրդի կենսական շահերը: Դրա
համար էլ մեր երկրի աշխատավորները
խորապես նվիրված են բոլշևիկյան պար-
տիային, նրա քաղաքականությունը համա-
րում են իրենց հարազատ գործը: Բոլշևիկ-
յան պարտիայի նկատմամբ սովետական
ժողովրդի ունեցած այդ անհուն նվիրվածու-
թյունը նույնպես կազմում է սովետական
հայրենասիրության բնորոշ, կարևորագույն
գծերից մեկը:

Սովետական մարդիկ հպարտ են այն բա-
նով, որ առաջինը հենց իրենց Հայրենիքում
տապալվեց կապիտալիզմի լուծը և իրակա-
նացվեց սոցիալիզմը: Այժմ առաջ ըն-
թանալով դեպի կոմունիզմ՝ մեր Հայրենիքը
երջանկության ուղի է ցույց տալիս բոլոր
մյուս երկրների աշխատավորներին:

Այդ պատճառով էլ սովետական մարդ-
կանց հատուկ է սովետական ազգային
հպարտության զգացմունքը, քանի որ
նրանք գիտակցում են, թե որքան վեհ են այն
խնդիրները, որ իրականացնում է սովետա-
կան ժողովուրդը: Սովետական հայրենասի-
րությունը տոգորված է Լենինի և Ստալինի

առաջավոր գաղափարներով, այն կոմունիզմ
կառուցող ազատ մարդկանց հայրենասի-
րությունն է։

Սոցիալիստական հասարակության մեջ,
որտեղ ստեղծվել է ժողովրդի բարոյա-քա-
ղաքական միասնություն, հայրենասիրու-
թյունը խորապես համաժողովրդական բնույթ
է կրում, այն հատուկ է բնակչության բոլոր
խավերին՝ սովետական բանվորներին, գյու-
ղացիներին, ինտելիգենցիային, սովետական
երկրի բոլոր ազգերին ու ժողովուրդներին։

Կապիտալիստական երկրներում շահա-
գործող խավերը փորձելով սքողել դասա-
կարգային հակասությունները և ամրապնդել
իրենց տիրապետությունը՝ ազգային թշնա-
մանք, շովինիզմ ու նացիոնալիզմ են հրա-
հրում, փորձելով դրանով իսկ թունավորել
աշխատավոր մասսաների հայրենասիրական
զգացմունքները։

Ի տարբերություն դրա, սովետական հայ-
րենասիրությունը բխում է սովետական սո-
ցիալիստական հասարակության բուն էու-
թյունից, որին խորթ է նացիոնալիզմի որևէ
դրսևորում։ Սովետական սոցիալիստական
հասարակությունը ազատ ազգերի եղ-
բայրական համագործակցության հասա-



րակությամ է։ Սովետական հայրենա-
սիրությունը բնորոշվում է իր խոր ինտեր-
նացիոնալիզմով, բոլոր ժողովուրդների ազ-
գային իրավունքների նկատմամբ տածվող
հարգանքով։ Լենինի—Ստալինի պարտիան
սովետական մարդկանց դաստիարակում է
մեր երկրի բոլոր ժողովուրդների եղբայրա-
կան բարեկամության ոգով։ Սովետական
Միությունում իրականացված է բոլոր մարդ-
կանց լիակատար իրավահավասարությունը՝
անկախ ազգային և ռասայական պատկանե-
լությունից։ Սովետական Միությունը մի
բազմազգ համերաշխ ընտանիք է, որտեղ
ամեն մի ժողովրդի տրված են բոլոր հնա-
րավորությունները՝ բազմակողմանի զար-
գացման համար։ Այդ է վկայում Սովետա-
կան Միության ազգային ռեսպուբլիկաների
տնտեսական և կուլտուրական բարգավաճու-
մը։ Բոլոր սովետական ռեսպուբլիկաներում
կա նորագույն տեխնիկայով հագեցված առա-
ջավոր սոցիալիստական արդյունաբերու-
թյուն, գործում են հսկայական թվով բարձ-
րագույն ուսումնական հաստատություններ,
գիտա-հետազոտական հիմնարկներ և այլն։
Սովետական հայրենասիրության հետ կապ-
ված է մեր երկրի բոլոր ժողովուրդների ազ-

գային դեմոկրատական տրադիցիաների զարգացումը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձի մասին տված իր զեկուցման մեջ ընկեր Ստալինը հետևյալ կերպ բնորոշեց սովետական հայրենասիրությունը և նրա ուժը։

«Սովետական հայրենասիրության ուժն այն է, որ նրա հիմքը ո՛չ թե ռասայական կամ նացիոնալիստական նախապաշարմունքներն են, այլ ժողովրդի խորին նվիրվածությունն ու հավատարմությունը իր Սովետական Հայրենիքին, մեր երկրի բոլոր ազգերի աշխատավորության եղբայրական համագործակցությունը։ Սովետական հայրենասիրության մեջ ներդաշնակորեն զուգակցվում են ժողովուրդների ազգային տրադիցիաները և Սովետական Միության բոլոր աշխատավորների ընդհանուր կենսական շահերը։ Սովետական հայրենասիրությունը մեր երկրի բոլոր ազգերին ու ժողովուրդներին չի բաժանում, այլ ընդհակառակն՝ համախմբում է եղբայրական միասնական ընտանիքի մեջ։ Դրա մեջ պետք է տեսնել Սովետական Միության ժողովուրդների անխորտակ և ավելի ու ավելի ամրապնդվող բարեկամության հիմքերը»։



Այսպիսով, սովետական հայրենասիրությունը ՍՍՌՄ ժողովուրդների ինտերնացիոնալ եղբայրության արտահայտությունն է, որին խորթ է բուրժուական նացիոնալիստական իդեոլոգիայի ամեն մի դրսևորում։ Դրա հետ մեկտեղ՝ սովետական հայրենասիրությանը խորապես խորթ է նաև կոսմոպոլիտիզմը, որը, ինչպես և նացիոնալիզմը, բուրժուական իդեոլոգիայի արտահայտություն է։ Հայտնի է, որ կոսմոպոլիտիզմը, որը քարոզում է ստորաքարշություն անել Արևմուտքի՝ մինչև ուղնուծուծը բուրժուական կուլտուրայի առաջ, հրաժարվել ժողովուրդների ազգային լավագույն տրադիցիաներից, հրաժարվել ազգային սուվերենությունից՝ հանդիսանում է ամերիկյան ագրեսիվ իմպերիալիզմի իդեոլոգիական զենքը, իմպերիալիզմ, որը նպատակ է դրել հաստատել իր համաշխարհային տիրապետությունը։ Դրա համար էլ սովետական մարդիկ, որոնք հպարտ են իրենց ազգային պանծալի տրադիցիաներով, իրենց սոցիալիստական Հայրենիքով՝ զզվանքով երես են դարձնում անտոհմ կոսմոպոլիտիզմի և բուրժուական նացիոնալիզմի ամեն մի արտահայտությունից և անհաշտ պայքար են մղում նրանց դեմ։

Սովետական հայրենասիրությունն առանձին ուժով դրսևորվեց Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։ Սովետական ժողովրդի զավակներն ու դուստրերը, որոնք համակված են անհուն սիրով ու նվիրվածությամբ դեպի իրենց սոցիալիստական Հայրենիքը և այրող ատելությամբ՝ դեպի ֆաշիստական զավթիչները, հերոսության հրաշքներ էին գործում։ Պատերազմի տարիներին սովետական մարդկանց հանդես բերած մեծ հայրենասիրությունը նրանց է՛լ ավելի սերտորեն համախմբեց բոլշևիկների պարտիայի շուրջը, սովետական կառավարության շուրջը, ընկեր Ստալինի շուրջը, ՍՍՌՄ ժողովուրդներին ոգեշնչեց հերոսական սխրագործությունների՝ հանուն Հայրենիքի։ Սովետական հայրենասիրությունը դրանով իսկ վճռական դեր խաղաց հիտլերյան ֆաշիզմի ջախջախման գործում, սովետական ժողովրդի մեծ հաղթանակի գործում։

Սովետական հայրենասիրությունը ոչ պակաս կարևոր դեր խաղաց և խաղում է սովետական մարդկանց խաղաղ ստեղծագործական աշխատանքում, նրանց ոգեշնչելով աշխատանքային սխրագործությունների՝ հա-



նուն մեր սոցիալիստական Հայրենիքի է՛լ ավելի բարգավաճման։

Աշխատանքում հայրենասիրություն դրսևորելը հնարավոր է միայն սոցիալիստական հասարակության պայմաններում, որտեղ մարդկանց աշխատանքը ծառայում է ամբողջ ժողովրդի շահերին։ Կապիտալիստական երկրներում աշխատավորները չեն կարող հայրենիքի նկատմամբ իրենց սերը արտահայտել աշխատանքային սխրագործություններով, որովհետև այնտեղ աշխատանքը ստրկացված է մասնավոր կապիտալի կողմից, և եթե, ասենք, բանվորը մասնավոր ձեռնարկությունում սկսի բարձրացնել իր աշխատանքի արտադրողականությունը, ապա դրանով նա կբարձրացնի միայն կապիտալիստի շահույթները։ Միանգամայն այլ է դրությունը սովետական երկրում, սոցիալիզմի պայմաններում։ Սովետական մարդիկ իրենց աշխատանքով որքան շատ և բարձրորակ արտադրանք են տալիս, այնքան ավելի են ամրապնդում իրենց Հայրենիքի տնտեսական հզորությունը։ Կատարելով աշխատանքային սխրագործություններ՝ սովետական մարդիկ դրանով իսկ դրսևորում են իրենց սերը դեպի Հայրենիքը, իրենց հոգատարությունը

նրա է՛լ ավելի բարգավաճման համար։

Այսպիսով, սովետական հայրենասիրությունը կարևոր դեր է խաղում սոցիալիստական հասարակության զարգացման գործում։ Սովետական հայրենասիրությունը սոցիալիստական հասարակության մյուս շարժիչ ուժերի՝ սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության, ժողովուրդների բարեկամության հետ միասին՝ մեր Հայրենիքի աշխատավորների սոցիալիստական բարձր գիտակցության արտահայտությունն է։

Մեր երկրի աշխատավորները իրենց ամենօրյա ստեղծագործ աշխատանքով ամրապնդելով մեր Հայրենիքի հզորությունը՝ գիտակցում են, որ դրանով իսկ իրենք ամրապնդում են խաղաղությունն ամբողջ աշխարհում, որովհետև մեր երկիրը խաղաղության հզոր հենարանն է, որին հուսով են նայում ամբողջ աշխարհի աշխատավորները։

Ոգեշնչված սովետական հայրենասիրության վեհ իդեաներով, ՍՍՌՄ ժողովուրդները է՛լ ավելի սերտորեն համախմբվելով բոլշևիկյան պարտիայի շուրջը, մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը, իրենց Հայրենիքը վստահորեն առաջ են տանում կոմունիզմի ուղիով։

Լ. ՄԱՆԱՍԱՐՅԱՆ

---

## 1952 ԹՎԱԿԱՆԻՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ ԿԱՏԱՐՎՈՂ ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ռեսպուբլիկայի քաղաքներում և շրջաններում ամեն տարի հսկայական աշխատանք է կատարվում կապիտալ շինարարության ասպարեզում։ Կապիտալ շինարարության ասպարեզում առավել լայն աշխատանք է կատարվում հատկապես 1952 թվականին։ Դրա փայլուն ապացույցը հանդիսանում է այդ նպատակի համար կատարվող հատկացումների զգալի աճը։ Այսպես. 1952 թվականին կապիտալ շինարարությունների գծով ռեսպուբլիկական բյուջեից կատարվող հատկացումների գումարը կազմում է 256.2 միլիոն ռուբլի։ Բացի դրանից, ավելի քան 640 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ են կատարվելու միութենական ենթակայության ձեռնարկությունների գծով՝ միութենական բյուջեի հաշվին։ Այդպիսի խոշոր հատկացումներն ապահովում են նոր գործարանների, ֆաբրիկաների, հիդրոկայանների, ջր-

րանցքների, գիտական հաստատությունների, բնակելի տների, հիվանդանոցների, դպրոցների, կուլտուրայի տների և այլ օբեկտների կառուցումը, որոնք ամբողջովին ծառայում են ժողովրդի կենսամակարդակի և կուլտուր-կենցաղային պայմանների էլ ավելի բարձրացմանն ու բարելավմանը։

Թե ընթացիկ տարում կապիտալ շինարարությունը ռեսպուբլիկայում ինչպիսի լայն մասշտաբներով է ծավալվում, այդ ցույց են տալիս մինիստրությունների կողմից կատարվող ներքոհիշյալ շինարարությունները և դրանց համար կատարած հատկացումները։

✪ Ռեսպուբլիկայի տեղական արդյունաբերության մինիստրությունը 1952 թվականին ցեմենտի, ներկի ու լաքի, էլեկտրալուսավորության արմատուրայի գործարանների, Երևանի կահույքի ֆաբրիկայի, Ղափանի, Գորիսի, Բայազետի մեխանիկական գործարանների և մյուս օբեկտների շինարարության վրա ծախսելու է մեծ գումարներ։

Այդ կառուցումներից բացի, մինիստրության ձեռնարկությունների օգտի հաշվին 7,7 միլիոն ռուբլի տրամադրվելու է Երևան քաղաքին և 3 միլիոն ռուբլի Լենինականի, Կիրովականի ու Երևանի օկրուգներին, որը



ամբողջապես ծախսվելու է տեղական արդյունաբերության նոր օբեկտներ կառուցելու և հները ընդարձակելու համար։

✪ Ընթացիկ տարում կապիտալ շինարարության ասպարեզում մեծ աշխատանքներ են կատարվելու Սննդի արդյունաբերության մինիստրության գծով։ Մինիստրությունը փոխանցիկ և նոր շինարարությունների վրա 1952 թվականին ծախսելու է մի քանի տասնյակ միլիոն ռուբլի, ըստ որում 4 միլիոն 380 հազար ռուբլի ծախսելու է բնակարանային շինարարության վրա։

Մինիստրությունը ընթացիկ տարում կավարտի մի շարք գործարանների ու ֆաբրիկաների շինարարությունը, որոնք կհանձնվեն շահագործման։ Շահագործման կհանձնվեն Կիրովականի Հացի գործարանը, որը օրական կտա 37,5 տոննա հացի արտադրանք, «Ժերես» գինու գործարանը, Միկոյանի անվան սովխոզի գինու գործարանը, Մարգարինի, Արզնու և Ջերմուկի հանքային ջրերի գործարանները, Բերիայի, Հոկտեմբերյանի, Լենինականի Կիմոնադի գործարանները, Հրուշակեղենի-մակարոնի, Ծխախոտի, Լենինականի հրուշակեղենի ֆաբրիկաները և նման մի շարք այլ գործարաններ ու ֆաբրիկաներ, որոնք ամեն տարի երկրին

կտան հսկայական քանակությամբ արտադրանք։

✪ Հայկական ՍՍՌ Թեթև արդյունաբերության մինիստրության գծով կապիտալ շինարարությունների ընդհանուր գումարը 1952 թվականին կազմում է տասնյակ միլիոն ռուբլի։ Դա լայն հնարավորություններ կտա զգալի չափով ավելացնելու թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների ցանցը։

Մինիստրության կողմից կատարվող կապիտալ շինարարությունների մեջ իրենց ծավալով հատկապես աչքի է ընկնում Բերիայի շրջանում կառուցվող Մետաքսագործվածքային ֆաբրիկան, որի կառուցման համար հատկացված է 9,5 միլիոն ռուբլի։ Մյուս խոշոր կառուցումը Բրդյա կտորեղենի կոմբինատն է, որի կառուցման վրա ծախսվելու է 6,7 միլիոն ռուբլի։

Արդյունաբերական ձեռնարկությունների հետ միասին մինիստրությունը զգալի աշխատանք է կատարելու նաև բնակարանային շինարարության ասպարեզում, որի համար հատկացված է 5 միլիոն ռուբլի։

Բանվորուհիների աշխատանքը հեշտացնելու նպատակով լայնորեն ընդարձակվելու է մանկական հիմնարկների ցանցը։ Նախա-



տեսվում է կառուցել չորս մանկապարտեզի և չորս մանկամսուրի շենքեր, որոնք լինելու են նորակառույց գործարաններին ու ֆաբրիկաններին կից։

✪ **Երևան քաղաքում** կոմունալ տնտեսության մինիստրությունը կատարելու է խոշոր կապիտալ շինարարություն։ Կառուցվելու են բնակելի նոր շենքեր, ձեռք են բերվելու շինարարական մեխանիզմներ և այլն։

**Երևանի օկրուգում** մինիստրությունը կատարելու է մի շարք շինարարություններ, որի համար նախատեսված գումարից մի քանի հարյուր հազար ռուբլի տրամադրված է Էջմիածնի ջրմուղի ցանցի ընդարձակմանն ու վերակառուցմանը, Վեդու ջրմուղի շինարարությանը։ Ջրամատակարարման ցանցի ընդարձակման ասպարեզում զգալի աշխատանքներ են կատարվելու նաև Արտաշատի, Գորիսի, Աշտարակի և մյուս շրջաններում։

Օկրուգի մեջ մտնող Գորիսի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Ղափանի, Սիսիանի և Ծաղկաձորի փողոցների ասֆալտապատման համար հատկացված է ավելի քան 440 հազար ռուբլի։

**Լենինականի օկրուգում** կատարվող կոմունալ շինարարությունների համար առանձ-

նացված միջոցներից Լենինականում բնակելի շենքի կառուցմանը հատկացված է մեկ միլիոն ռուբլի, Ղուկասյանում կառուցվող բնակելի շենքի համար՝ 120 հազար ռուբլի, Լենինականի փողոցների ասֆալտապատման համար՝ 300 հազար ռուբլի։ Զգալի միջոցներ են հատկացված Արթիկի էլեկտրացանցի վերակառուցման, փողոցների ասֆալտապատման, Սպիտակի ջրմուղի կարգավորման և կոմունալ մյուս օբեկտների նորոգման համար։

**Կիրովականի օկրուգում** կոմունալ շինարարություններին այս տարի հատկացված է մի քանի միլիոն ռուբլի։ Այդ գումարով Կիրովական քաղաքում և Կիրովականի օկրուգի շրջանային կենտրոններում կառուցվելու են երեք բնակելի շենք, վերակառուցվելու է ջրմուղների ցանցը, ասֆալտապատվելու են մի շարք փողոցներ, ընդարձակվելու է էլեկտրացանցը և այլն։ Բացի դրանցից, Իջևանում կառուցվելու է հյուրանոց, որի համար ծախսվելու է 470 հազար ռուբլի, իսկ Ալավերդում կառուցվող բաղնիքի համար՝ 400 հազար ռուբլի։

Կոմունալ տնտեսության մինիստրու-



թյան կողմից կատարվող շինարարությունների վրա 1952 թվականին ծախսվող ընդհանուր գումարը հասնում է տասնյակ միլիոն ռուբլու, որով է՛լ ավելի կբարելավվի բնակչության կոմունալ սպասարկումը։

✪ Շինանյութերի արտադրությունը զգալի չափով ավելացնելու և ռեսպուբլիկայում կառուցվող օբեկտները շինանյութերով ապահովելու համար Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը ընթացիկ տարում խոշոր աշխատանք է կատարելու Արթիկ-տուֆի, Անի-պեմզայի, Երևանի և մյուս վայրերի շինանյութերի արտադրության ձեռնարկություններում։

Շինանյութերի արտադրության ձեռնարկությունների ընդարձակման գծով կատարվող ներդրումները կապահովեն շինանյութերի արտադրության հետագա ավելացումը։

✪ 1952 թվականին ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային կայաններում կատարվելու է մի քանի միլիոն ռուբլու կապիտալ շինարարություն։

Ընթացիկ տարում մեքենա-տրակտորային կայաններում կառուցվելու են 12 ար-

հեստանոց, 11 ծածկ (նավեսներ), բնակելի շենքեր և հանրակացարաններ, գրասենյակի 4 շենք։ Դրանցից բացի, զգալի միջոցներ են հատկացված ՄՏ կայանների էլեկտրաֆիկացմանը և ջրմուղների ցանցի ընդարձակմանը։

✪ 1952 թվականին շինարարական խոշոր աշխատանք են կատարելու նաև ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները կառուցելու են խոշոր եղջերավոր անասունների 200 գոմ՝ 25.000 գլխի համար, 200 ոչխարանոց՝ 100.000 գլխի համար, 60 հորթանոց՝ 5.000 գլխի համար, 25 ձիանոց՝ 1.000 գլխի համար, 100 խոզանոց՝ 13.000 գլխի համար, 200 թռչնանոց՝ 100.000 թռչունի համար, 140 սիլոսի աշտարակ՝ 20.000 տոննա տարողությամբ։ Բացի այդ, կոլտնտեսությունները կառուցելու են ծխախոտի 800 աչք արևային, 60 կրակային չորանոցներ և հակավորման ու տեսակավորման 60 շենք։ Կոլտնտեսությունները միաժամանակ կառուցելու են հանքային



պարարտանյութերի 320 պահեստ՝ 64.000 տոննա ընդհանուր տարողությամբ և նման մի շարք շինարարություններ, որոնք նպաստելու են հանրային տնտեսության հետագա զարգացմանն ու ամրապնդմանը։

Կոլտնտեսությունները վերոհիշյալ շինարարությունները կատարելու են բացառապես տիպային նախագծերով։

✪ 1952 թվականին կապիտալ շինարարության ասպարեզում ծավալուն աշխատանք է կատարում Առողջապահության մինիստրությունը։ Մինիստրությունը Ջերմուկում կառուցում է կլինիկական սանատորիայի, վաննայի շենքեր, հանքային ջրերի գալերեա։ Հանքային ջրերի գալերեա է կառուցվում նաև Արզնիում։

Դրանցից բացի, Առողջապահության մինիստրությունը Երևանում կառուցում է հոգեբուժական հիվանդանոցի, Միկոյանի ռայոնում՝ հիվանդանոցի նոր շենքեր։ Հիվանդանոցների նոր շենքեր են կառուցվում նաև Էջմիածնի, Թալինի շրջաններում և ծննդատուն՝ Բասարգեչարի շրջանում։

Այս բոլորը փայլուն ապացույց են այն բանի, թե հարազատ Սովետական կառավարությունը որքան մեծ ուշադրություն է

դարձնում մեր աշխատավորության բուժսպասարկման գործին։

✪ Ինչպես ամեն տարի, այնպես էլ այս տարի Սովետական կառավարությունը խոշոր միջոցներ է հատկացրել բարձրագույն ուսումնական հաստատությունների, մասնագիտական տեխնիկումների, մասսայական դպրոցների և մանկապարտեզների նոր շենքերի ու հանրակացարանների կառուցման համար։ Միայն մանկավարժական ուսումնարանների, միջնակարգ և ոչ լրիվ միջնակարգ դպրոցների և մանկապարտեզների նոր շենքեր կառուցելու համար Լուսավորության մինիստրության կողմից 1952 թվականին ծախսվելու է 10 միլիոն 900 հազար ռուբլի։ Այդ գումարով Կիրովականում կառուցվում են ռուսական մանկավարժական ուսումնարանի և հանրակացարանի նոր շենքեր։ Դպրոցական նոր շենքեր են կառուցվում նաև Երևանի Միկոյանի, Մոլոտովյան, Ստալինյան ռայոններում, Լենինականում, Ալավերդում, Ղափանի, Ղուկասյանի, Իջևանի շրջաններում և այլն։

✪ Առևտրի մինիստրության գծով ընթացիկ տարում ռեսպուբլիկայի քաղաքներում ու շրջաններում կառուցվելու են բավականին նոր օբեկտներ։ Մինիստրության կող-



մից մեկ միլիոն 420 հազար ռուբլի հատկացվելու է նոր խանութների ու կրպակների կառուցմանը։

Բնակչությանը թարմ և բարձրորակ սննդամթերքներ մատակարարելու նպատակով կառուցվում է 200 տոննա տարողությամբ պահեստ-սառցարան, որի համար բաց է թողնված 475 հազար ռուբլի։ Բացի այդ, մեկ միլիոն 390 հազար ռուբլու սառցարաններ են դրվելու մթերային խանութներում և ճաշարաններում։

Ընթացիկ տարում կապիտալ շինարարության գծով ծավալում աշխատանքներ են
կատարելու նաև Հայկական ՍՍՌ Ջրային
տնտեսության, Մսեղենի ու կաթնեղենի ար-
դյունաբերության և մյուս մինիստրություն-
ներն ու կազմակերպությունները։

Ռեսպուբլիկայում ծավալված այսպիսի խոշոր կապիտալ շինարարությունը և այդ գծով կատարված հսկայական հատկացումները ապացույց են այն ջերմ հոգատարության, որ հայ ժողովրդի նկատմամբ ցուցաբերում են Սովետական կառավարությունը, բոլշևիկների պարտիան և մեծ առաջնորդ ընկեր Ստալինը։

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ԻՆՉՊԵՍ ԵՆՔ ՀԱՎԱՔՈՒՄ ԾԽԱԽՈՏԻ ԱՌԱՏ ԲԵՐՔԸ

*Հշտությամբ կիրառելով ծխախոտագործության ագրոտեխնիկական միջոցառումները և լայնորեն արմատավորելով գյուղատնտեսության առաջավորների փորձը, մեր օղակը ամեն տարի աճեցնում է ծխախոտի առատ բերք։ Օղակը ավելի առատ բերք է աճեցրել հատկապես այս տարի, որի շնորհիվ էլ ամբողջ պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից սպասվում է 25—28 ցենտներ միջին բերք։*

*Մենք մեր սեփական փորձով համոզվել ենք, որ պլանտացիայում առատ բերք աճեցնելը բավական չէ. կարևորը աճեցրած բերքը ժամանակին ու անկորուստ հավաքելն է, որի վրա մենք հենց այժմ, տերևաքաղի այս եռուն ժամանակաշրջանում, առանձնահատուկ ուշադրություն ենք դարձնում։*

*Ծխախոտի տերևաքաղը կատարելիս օղակի ամեն մի ծխախոտագործ աշխատում է զգուշությամբ, որպեսզի տերևները և բույսը ոչ մի վնասվածք չստանան, իսկ քաղված տե-*



*րևները ճիշտ տեսակավորվեն ու լավ չորացվեն։ Տերևաքաղը կատարում ենք տերևների հասունության շրջանում, օրվա հով ժամերին, առավոտները (ցող չլինելու դեպքում) ու երեկոները, ինչպես և լուսնյակ գիշերներին։ Ուսումնասիրելով երկրի առաջավոր ծխախոտագործների փորձը՝ տերևաքաղը կատարում ենք 2 ձեռքով, որը աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում է 30—35 տոկոսով։ Տերևները քաղում ենք շատ զգույշ, որպեսզի բույսի կեղևը չպոկվի և չփչանա։ Բութ մատով և ցուցամատով բռնում ենք տերևի կոթունը և միջամատը թեքելով՝ կոթունի հիմքից պոկում։ Պոկված տերևը, կոթունից բռնած, երեսի կողմով տեղավորում ենք հաջորդ հասունացած տերևի հակառակ կողմի վրա այնպես, որ երկու տերևների կոթունները լրիվ տեղավորվեն միմյանց վրա։ Նույն ձևով պոկում ենք երկրորդը, երրորդը և մյուս հասունացած տերևները, մինչև որ ձեռքներումս հավաքվում է 10—15 տերև։ Քաղված տերևներն զգուշությամբ դասավորում ենք ծխախոտի բույսի ստվերի տակ, ակոսում և շարքը վերջացնելուց հետո քաղված տերևները հավաքում ու դարսում ենք քթոցի կամ արկղի մեջ այնպես, որ նրանց կոթերը*

լինեն դրսի կողմը, որպեսզի տերևները քթոցում չվնասվեն։

Ջորանոցում ծխախոտի տերևները քթոցից հանելով դասավորում ենք հատակին, որ նախօրոք ծղոտ ենք փռում։ Այնուհետև սկսում ենք տերևները շարել թելի վրա։ Սա նույնպես շատ նուրբ աշխատանք է. ձեռքի մեջ վերցնելով 5—8 տերև, արագ կերպով դրանք անց ենք կացնում ասեղի վրա։ Ասեղը տերևներով լցվելուց հետո, դրանք փոխադրում ենք թելի վրա և նոսրացնում։ Մանր տերև լինելու դեպքում, առաջին քաղի ժամանակ, թելի վրա դասավորում ենք 470—500 տերև, իսկ մեծատերև սորտերի և երրորդ ու չորրորդ քաղերի ժամանակ՝ 300 տերև։ Վնասվածքներ ստացած, գերհասունացած կամ կեղտոտված տերևներն առանձնացնում և շարում ենք առանձին, որպեսզի տամկացման և չորացման ընթացքում հումքի որակը չընկնի։

Բարձրորակ ծխախոտի ստացումը մեծապես կախված է տերևների ճիշտ տամկացումից։ Դրա համար էլ մենք հատուկ ուշադրություն ենք դարձնում տերևների խնամքով տամկացման և չորացման աշխատանքների վրա։ Տամկացումն ավարտված ենք համարում այն ժամանակ, երբ տերևները



բավականաչափ թառամում և բաց դեղին գույն են ստանում։ Դրանից հետո անցնում ենք ծխախոտի տերևների չորացման աշխատանքներին։ Շարված տերևները շատ զգուշությամբ տեղափոխում ենք շրջանակների վրա։ Շրջանակները լրիվ բեռնելուց և 2—4 ժամ չորանոցում թողնելուց հետո, դուրս ենք բերում արևի տակ։ Անձրևի և քամու ժամանակ շրջանակները դուրս չենք թողնում։ Ծխախոտը չորանալուց հետո շարանները խնամքով հանում ենք շրջանակներից և հավանգավորում։ Աշնանային անձրևների ժամանակ, երբ օդի խոնավությունը շատ է բարձրանում, չորանոցի առաստաղից և պատերից կախված հավանգների ծխախոտը կարող է բորբոսնել և կորցնել իր որակը։ Դրանից խուսափելու համար մեր օղակի ծխախոտագործները սիստեմատիկաբար ստուգում են հավանգների խոնավության աստիճանը և գերխոնավացած հավանգները տեղափոխում են չորանոցի տանիքի ծայրամասերը, մինչև նորմալ խոնավություն ստանալը։ Չորացման պրոցեսի ավարտումից հետո սկսում ենք հակավորումը։ Ծխախոտի հակավորումից առաջ հավանգները տեղափոխում ենք խոնավանոցները, որպեսզի ծխախոտի տերև-

ներն ստանան պահանջված խոնավությու-
նը և հակավորման ընթացքում չվնասվեն։
Նախքան հակավորման աշխատանքին անց-
նելը տերևները տեսակավորում ենք այն
հաշվով, որ միևնույն հակի մեջ դա-
սավորվեն նույն քաղի և միատեսակ տերև-
ները։ Ծխախոտը հակավորելիս տերևները
դասավորում ենք կանոնավոր կերպով, կո-
թունները դեպի դուրս։ Ծխախոտի ճիշտ հա-
կավորումը կարևոր նշանակություն ունի
հումքի հետագա լավ պահպանման և վերա-
մշակման գործում։

Ծխախոտագործական մեր օղակը, որն ա-
մեն օր կատարում և գերակատարում է
տերևաքաղի պլանը, երբեք չի հանգստա-
նում ձեռք բերած հաջողություններով։ Օ-
ղակի ամեն մի անդամ աճեցրած առատ
բերքի անկորուստ հավաքման համար թանկ
է գնահատում ժամանակը և ձգտում է հաս-
նել այն բանին, որ այս տարի հարազատ
Սովետական պետությանը տանք ավելի շատ
ծխախոտի հումք, քան տվել ենք որևէ
տարի։

Ն. ԷԼԱՐՅԱՆ

(Իջևանի շրջանի Սարի գյուղի կոլտնտե-
սության օղակավարուհի, Սոցիալիստա-
կան Աշխատանքի Հերոս, Հայկական
ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ)

---

ՄԵՐ ԵՐԿՐԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՕՋԱԽՆԵՐԸ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ԹԱՏՐՈՆԸ

1776 թվականին ռուսական առաջավոր
հասարակայնության նախաձեռնությամբ
Մոսկվայում հիմնադրվեց Մեծ թատրոնը։

Մեծ թատրոնը առաջին իսկ տարվանից
իր վրա գրավեց ռուսական կոմպոզիտորնե-
րի ուշադրությունը։ Ռուսական երաժշտա-
կան կուլտուրան իսկույն առաջատար դեր
գրավեց թատրոնի ռեպերտուարում։ Թատ-
րոնում սկսեցին բեմադրվել եղած բոլոր
ռուսական օպերաները։

Անցյալ դարի 40-ական թվականներին
ռուս ժողովուրդը առաջին անգամ Մեծ թատ-
րոնի դահլիճում լսեց ռուսական օպերայի
հայր Գլինկայի հանճարեղ ստեղծագործու-
թյունները՝ «Իվան Սուսանին»-ը ու «Ռուս-
լան և Լյուդմիլա»-ն։

Գլինկայից հետո թատրոնի բեմում իրար

հաջորդեցին կոմպոզիտորներ՝ Դորգոմիժսկին, Սերովը, Մուսորգսկին, Բորոդինը, Ռիմսկի-Կորսակովը, Չայկովսկին։

Կոմպոզիտոր Չայկովսկին ականավոր դեր է խաղացել ռուսական ազգային երաժշտական կուլտուրայի զարգացման գործում։ Նրա օպերաների և բալետների բեմադրությունը նոր փայլուն էջ բացեց Մեծ թատրոնի պատմության մեջ։

Մուսորգսկու «Բորիս Գոդունովը» և «Խովանշչինա»-ն, Ռիմսկի-Կորսակովի «Սնեգուրոչկա»-ն, «Սադկո»-ն և «Գիշերը ծննդյան տոնից առաջ», Բորոդինի «Կնյազ Իգոր»-ը, Չայկովսկու «Եվգենի Օնեգինը» և «Պիկովայա դամա»-ն ռուսական օպերային արվեստը բարձրացրին մի նոր աստիճանի, նոր պահանջներ ներկայացնելով կատարողներին։

Ռուսական նոր, իսկական դերասանական արվեստի հիմքերը դրին մեծ երգիչ-արտիստներ Շալյապինը, Նեժդանովան, Սոբինովը, հաստատելով հայրենական երգեցիկ կուլտուրայի համաշխարհային փառքը։ Ռուսական բալետը, հանձինս Ա. Գորսկու, Լ. Ռոսլավլևայի, Վ. Տիխոմիրովի, Ե. Գելցերի և ուրիշների, համաշխարհային հռչակ ստացավ։



1905 թվականի ռևոլյուցիայի պարտությունից հետո ստեղծված քաղաքական ռեակցիան, կայսերական թատրոնների դիրեկցիաների վարած պահպանողական քաղաքականությունը իջեցնում և արգելակում են Մեծ թատրոնի ստեղծագործական աճը։ Թատրոնի առաջ ծառացավ օպերային և բալետային արվեստի նվաճումները կորցնելու վտանգը։ Թատրոնի ստեղծագործական աճման վրա կործանարար ազդեցություն էին գործում արվեստի բնագավառում եղած ռեակցիոն հոսանքները։

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան թատրոնին ազատեց ռուս ժողովրդի երաժշտական կուլտուրայի կուտակած ազգային արժեքները ընդմիշտ կորցնելու վտանգից։ Ռևոլյուցիան Մեծ թատրոնի արվեստին նոր, բարձր գաղափարական բովանդակություն հաղորդեց։ Նա նոր կյանք տվեց թատրոնի արվեստին, նրա առաջ բացեց ստեղծագործական զարգացման ամենալայն հեռանկարներ։

Մեծ թատրոն եկան նոր հանդիսատեսներ՝ բանվորներ, գյուղացիներ, զինվորներ։ Թատ-

րոնի առաջ ծառացավ մի ամենաշնորհակալ խնդիր՝ ժողովրդական մասսաներին ցույց տալ ռուսական երաժշտական մեծ կուլտուրայի հսկայական հարստությունները։

Զարգացնելով կոմպոզիտորների հետ ունեցած ստեղծագործական համագործակցության տրադիցիաները՝ Մեծ թատրոնը 1918 թվականից սկսած բեմադրել է սովետական կոմպոզիտորների ավելի քան 40 օպերա և բալետ։ Սովետական օպերային դրամատուրգիայի ամրապնդման ու զարգացման համար մեծ նշանակություն ունեցան Ի. Ձերժինսկու «Խաղաղ Դոն» օպերայի, Ռ. Գլիերի «Կարմիր կակաչ» և «Պղնձե հեծյալ» բալետների, Բ. Ասաֆևի «Բախչիսարայի շատրվանը» ու «Փարիզի բոցը» բալետների և այլ օպերաների ու բալետների բեմադրությունները։

Աճել և կատարելության են հասել սովետական օպերային կուլտուրայի արժանավոր ներկայացուցիչներ, ականավոր արտիստներ՝ Ա. Պիրոգովը, Մ. Միխայլովը, Մ. Ռեյզենը, Ի. Կոզլովսկին, Ս. Լեմեշևը, Ն. Խանաևը, Վ. Դավիդովան Մ. Մակսակովան, Ն. Շպիլլերը, Ե. Կրուգլիկովան և ուրիշներ։ Բարձր է սովետական բալետի արտիստների վարպետությունը, դրանց թվին են պատկանում Գ. Ու-



լանովան, Մ. Սեմյոնովան, Օ. Լեպեշինսկայան, Ա. Երմոլաևը, Վ. Պրեոբրաժենսկին և շատ ուրիշներ։

Մեծ թատրոնի ստեղծագործական գործունեության նոր վերելքի համար վորեղ խըթան հանդիսացավ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի «Վ. Մուրադելու «Մեծ բարեկամություն» օպերայի մասին» որոշումը։

Պարտիայի հոգատարությունը, թատրոնի հասցեին «Պրավդա» թերթի արած սկզբունքային քննադատությունը օգնում են թատրոնին ստեղծելու սովետական ժողովրդի բազմահարուստ հերոսական կյանքն արտացոլող օպերային և բալետային ներկայացումներ։

Ստեղծագործական աշխատողները չեն պարփակվում իրենց թատրոնի պատերի մեջ։ Մեծ թատրոնի արտիստներին կարելի է տեսնել գործարանների ու ֆաբրիկաների ակումբներում, Միության ռեսպուբլիկաների օպերային թատրոնների և կոլտնտեսային կուլտուրայի տների բեմերում։ Նրա առաջատար մենակատարների նախաձեռնությամբ զարգանում է կուլտուրական շեֆությունը կոմունիզմի մեծ կառուցումների կոլեկտիվներում։

Պարտիայի ու կառավարության և անձամբ ընկեր Ստալինի անդուլ հոգատարության շնորհիվ՝ Մեծ թատրոնը դարձել է սովետական ժողովրդի լավագույն թատրոնը։ Մեծ թատրոնի 12 ներկայացում արժանացել են Ստալինյան մրցանակի, 70-ից ավելի աշխատողներ արժանացել են Ստալինյան մրցանակի լաուրեատի կոչման։ Մեծ թատրոնի կոլեկտիվում աշխատում են օպերայի և բալետի խոշորագույն վարպետներ, որոնք շարունակում և զարգացնում են ռուսական երաժշտական բեմի լավագույն տրադիցիաները։

Մեծ թատրոնի երաժշտական կուլտուրան օրինակ է ծառայում ոչ միայն Սովետական Միության երաժշտական թատրոնների և ժողովրդական դեմոկրատիայի երկրների թատրոնների համար, այլև արտասահմանյան շատ երկրների երաժշտական արվեստի առաջադեմ գործիչների համար։

Կ. ՊՈՂՈՍՅԱՆ



# ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՑԱՍՈՒՄՆ ՈՒ ՎՐԴՈՎՄՈՒՆՔԸ

Փարիզի ոստիկանության կողմից ֆրանսիական կոմունիստական պարտիայի քարտուղար Ժակ Դյուկլոյի ձերբակալությունը առաջ բերեց Ֆրանսիայի աշխատավորների նողկանքի ու բողոքի ուժգին պոռթկում։ Ֆրանսիական ժողովրդի առաջնորդ Մորիս Թորեզի մերձավոր բարեկամ և հավատարիմ զինակից Ժակ Դյուկլոն արիության ու խիզախության մարմնավորումն է։ Ֆրանսիայի հիտլերյան օկուպացիայի տարիներին նա ֆաշիստական զավթիչների դեմ ուղղված հայրենասիրական պայքարի անվեհեր կազմակերպիչներից մեկն էր։ Այժմ, երբ Ֆրանսիան իր բուրժուական կառավարողների կողմից ծախված է նոր՝ ամերիկյան օկուպանտներին, Դյուկլոն, ինչպես և կոմպարտիայի մյուս ղեկավարները, գլխավորում են ֆրանսիական ժողովրդի պայքարը հանուն իր

հայրենիքի անկախության, ճանում խաղաղության և աշխատության։

Պատրաստելով համաշխարհային երրորդ պատերազմը՝ ամերիկյան իմպերիալիստները մտահոգված են մի բանով՝ ճնշել ժողովրդական այն հզոր շարժումը, որը ծավալվում է իրենց թիկունքում՝ ի պաշտպանություն խաղաղության և դեմոկրատիայի։ «Պատերազմ մղելու համար,— մատնանշում է ընկեր Ստալինը,— բավական չէ սպառազինումների աճումը, բավական չէ նոր կոալիցիաների կազմակերպումը։ Դրա համար անհրաժեշտ է նաև թիկունքի ամրապնդումը կապիտալիզմի երկրներում։ Ոչ մի կապիտալիստական երկիր չի կարող լուրջ պատերազմ մղել, նախապես չամրապնդելով իր սեփական թիկունքը, չսանձահարելով «իր» բանվորներին, չսանձահարելով «իր» գյուղացիներին։ Այստեղից էլ բուրժուական կառավարությունների քաղաքականության սիստեմատիկ ֆաշիզացիան»։

Ֆրանսիայի կառավարողներն իրենց անգլո-ամերիկյան տերերի հրամանով դիմում են ժողովրդի ահաբեկման զուտ ֆաշիստական միջոցներին՝ տեռորի, խաղաղության առաջամարտիկներին բանտերը նետելուն։



Ֆրանսիայում տիրող ռեժիմը, ամերիկյան վերահսկողության տակ ընկած մյուս երկրների ռեժիմների նման, արագորեն ֆաշիզացիայի է ենթարկվում։

Բոլոր երկրներում խաղաղության կողմնակիցների շարժման առաջին շարքերում ընթանում են կոմունիստները։ Կոմունիստական պարտիաները կանգնած են խաղաղության պաշտպանության դիրքերում, փակում են ֆաշիզմի և պատերազմի ուղին։ Այստեղից էլ հասկանալի է, թե ինչու ամերիկյան իմպերիալիստները և մյուս երկրներում եղած նրանց լակեյները իրենց ոխն ու չարությունը ուղղում են առաջին հերթին կոմունիստական պարտիաների դեմ։

Մերկացնելով Ժակ Դյուկլոյի ապօրինի ձերբակալության իսկական պատճառը՝ կոմունիստ-դեպուտատ Ֆերնան Գրենեն Ֆրանսիայի Ազգային Ժողովի նիստում դիմելով ռեակցիոն պարտիաների դեպուտատներին, ասաց.

«Ճշմարտությունն այն է, որ դուք չեք կարողանում ձեր ֆաշիստական ռեժիմը փաթաթել երկրի վզին և պատերազմի մեջ ներքաշել երկիրը՝ չփորձելով ոչնչացնել ձեր գլխա-

վոր հակառակորդին— Ֆրանսիայի կոմունիստական պարտիան»։

Բայց կոմունիստական պարտիան, Ֆրանսիայի բանվոր դասակարգի՝ մարտերում կոփված պանծալի պարտիան այնպիսի մեծ ուժ է, որին չի կարելի ոչնչացնել ո՛չ սպառնալիքներով, ո՛չ պրովոկացիաներով, ո՛չ էլ տեռորով։ Ֆրանսիայում, ինչպես և Արևմտյան Եվրոպայի մյուս երկրներում, կոմունիստական պարտիաների ղեկավարությամբ ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում ժողովրդական մասսաների հերոսական պայքարն ընդդեմ պատերազմի հրձիգների, ընդդեմ համաշխարհային տիրապետության ձգտող ամերիկյան իմպերիալիստների հանցավոր ոտնձգությունների։

Ֆրանսիական ժողովուրդն իր խաղաղության կամքը պարզորոշ ցույց տվեց ամերիկյան գեներալ Ռիջուեյի Ֆրանսիա ժամանելու դեմ ուղղված ահեղ ցույցերում։ Մինչև վերջին ժամանակներս պատերազմի այդ հանցագործը Կորեայում ամերիկյան ինտերվենտների զորքերի հրամանատարն էր։ Դահիճ Ռիջուեյը Կորեայի խաղաղ բնակիչների՝ երեխաների, կանանց և ծերերի մասսայական սպանությունների ոճրագործն է։ Նա էր, որ գործածության մեջ մտցրեց պատե-



րազմի ամենազազրելի զենքը՝ ժանտախտի, խոլերայի, տիֆի և այլ հիվանդությունների միկրոբները։ Նրա հրամանով գնդակահարվել և տանջամահ են արվել կորեական և չինական մեծ թվով ռազմագերիներ։

Ամերիկյան իմպերիալիստները Ռիջուեյին վերջերս նշանակեցին պատերազմի մյուս հրձիգ էյզենհաուերի տեղը։ Ռիջուեյը այժմ կոչվելու է Հյուսիս-ատլանտյան բլոկի զորացույն գլխավոր հրամանատար և բազմելու է Փարիզից 18 կիլոմետր հեռու գտնվող Վերսալյան պալատում։ Նրան կենթարկվի այսպես կոչված «եվրոպական բանակը», որի ստեղծման պայմանագիրը կնքվեց մայիսի 27-ին, հենց այն օրը, երբ Ռիջուեյը վայրէջք կատարեց Փարիզի մոտ գտնվող Օրլի օդանավակայանում։ «Եվրոպական բանակի» մեջ ֆրանսիական, իտալական, բելգիական, հոլլանդական և լյուքսեմբուրգյան զորքերի հետ միասին, կմտնեն Արևմտյան Գերմանիայի վերականգնվող գերմանա-ֆաշիստական դիվիզիաները։

Ֆրանսիական հողը ոտք դնելուն պես Ռիջուեյը հայտարարեց ժուռնալիստներին, որ Կորեայում մղած պատերազմի իր «փորձը» իր համար «չափազանց օգտակար կլինի Եվրոպայում»։ Ռիջուեյը և նրա տերեր՝ ամերի-

կյան միլիտարիստները երազում են Կորեա-
յում իրենց կատարած ոճրագործությունները
է՛լ ավելի հրեշավոր մեծ չափերով կրկնել
Եվրոպայի մայր ցամաքում:

Սակայն Ռիջուեյի Եվրոպա ժամանելուց
անմիջապես հետո նրանք ստիպված եղան
համոզվել, որ ֆրանսիական ժողովրդին
խորապես խորթ են ամերիկյան իմ-
պերիալիստների պլանները և հենց ինքը՝
Ռիջուեյը: Կորեայի արյունարբու դահճին
համաժողովրդական բուռն ցասումով դիմա-
վորեց Ֆրանսիան: Վերսալում դեռ նրա երե-
վալուց առաջ, ամբողջ երկրում տեղի ունե-
ցան բողոքի միտինգներ, ցույցեր, գործա-
դուլներ: Մայիսի 23-ին կայացավ Փարիզի
բնակչության ցույցը: Այդ օրը հսկայական
քաղաքի բոլոր ծայրերից հնչում էին՝ «Ռի-
ջուեյը մարդասպան է», «Ռիջուե՛յ, դուրս կո-
րի՛ր», «Կորչի՛ Ֆրանսիայից ժանտախտի գե-
ներալը» խոսքերը:

Հետևյալ օրը տպագրված հոդվածում կոմ-
պարտիայի «Յումանիտե» թերթի գլխավոր
խմբագիր Անդրե Ստիլը նշում էր, որ ոստի-
կանությունն իր ամբողջ ուժով ի վիճակի
չեղավ խանգարել Փարիզի աշխատավորներին
արտահայտելու իրենց բողոքը Ռիջուեյի ա-



ռաջիկա ժամանման դեմ: Ընդգծելով, որ ֆր-
րանսիական ռեակցիան վախենում է ժողո-
վրդից, Ստիլը գրում էր. «Հենց այդ պատ-
ճառով էլ ֆրանսիական կապիտալիստները
և նրանց լակեյները այնքան կարիք ունեն ա-
մեն ինչի ընդունակ Ռիջուեյի և օտար երկրի
բանակի ժամանմանը մեր հողը: Բայց հենց
այդ պատճառով էլ ֆրանսիական ժողովուր-
դը, որ հրաժարվում է հակասովետական ագ-
րեսիայի պլաններին մասնակցելուց, չի ու-
զում իր երկրում տեսնել Ռիջուեյին»:

«Առաջին հարվածը»— այսպես էր վերնա-
գրել իր հոդվածը Անդրե Ստիլը: Այդպես էլ
կոչվում է այս տարի Ստալինյան մրցանա-
կի արժանացած Ստիլի հայտնի վեպը, որի
մեջ պատմվում է Ֆրանսիայում ամերիկյան
օկուպանտներին ցույց տրվող հարաճուն դի-
մադրության մասին:

Ռեակցիան՝ գազազած այն բանից, որ ինքն
անընդունակ է ճնշելու Ռիջուեյի ժամանման
դեմ բարձրացած բողոքի ալիքը, որոշեց
ֆրանսիական ժողովրդին ահաբեկել՝ խաղա-
ղության ամենաակտիվ մարտիկների նկատ-
մամբ դատաստան տեսնելով: Մայիսի 25-ին
բանտ նետվեց Անդրե Ստիլը: Այդ ոճրագոր-
ծությունը կատարվեց Փարիզի ոստիկանա-

պետ, աջ-սոցիալիստ Բեյլոյի հրամանով, որը հենց նոր էր վերադարձել ԱՄՆ-ից, այնտեղ հրահանգներ ստանալով, թե ինչպես պետք է ճնշել խաղաղության կողմնակիցների շարժումը։

Սակայն դավաճան Բեյլոն և նրա նման ամերիկյան լակեյները անզոր են ահաբեկելու ազատասեր ֆրանսիական ժողովրդին։ Մայիսի 27-ին և առանձնապես 28-ին Փարիզում և մյուս քաղաքներում տեղի ունեցան Ռիջուեյի ժամանման դեմ, «Եվրոպական բանակ» ստեղծելու պայմանագրի կնքման դեմ, Ֆրանսիան ամերիկյան ագրեսորներին Թնդանոթի միս մատակարարող դարձնելու դեմ ուղղված բողոքի ավելի հզոր ցույցեր։ Ցույցերն անցան մեծ հաջողությամբ, չնայած ցույցերի դեմ հանվել էին զորքերը և ոստիկանությունը, որոնք գնդակոծում էին անզեն մարդկանց և գազանաբար ծեծում ցուցարարներին։

Խուճապի մատնվելով խաղաղության պաշտպանության և ազգային անկախության համար բանվոր դասակարգի և բոլոր ազնիվ ֆրանսիացիների գործողություններից, ամերիկյան օկուպանտները և ֆրանսիական ռեակցիան դիմեցին մի աղաղակող, ֆաշիս-



տական պրովոկացիայի։ Մայիսի 29-ին ձերբակալվեց Ֆրանսիայի Կոմունիստական պարտիայի քարտուղար Ժակ Դյուկլոն։ Նրան բանտարկեցին, չնայած այն բանին, որ նա, որպես պառլամենտի դեպուտատ, անձեռնմխելիության իրավունք ունի։ Ժակ Դյուկլոյից և Անդրե Ստիլից բացի, ռեակցիան բանտնետեց նաև մոտ երկու հարյուր այլ հայրենասերների։ Ոստիկանական լրտեսները փորձում են կեղծ փաստաթղթեր պատրաստել, նրանց մեղադրելով դավադրության մեջ։ Պատրաստելով նոր պրովոկացիաներ, կոպիտ կերպով ոտնահարելով ռեսպուբլիկայի օրենքները, ոստիկանությունը խուզարկություններ կատարեց Ֆրանսիայի Կոմպարտիայի Կենտկոմի շենքում և դեմոկրատական մյուս կազմակերպությունների շենքերում՝ մայրաքաղաքում և երկրի շատ խոշոր քաղաքներում։ Բուրժուական կեղծ դեմոկրատիան նորից ամբողջ աշխարհի առաջ հանդես եկավ իր իսկական դեմքով՝ որպես բռնության, կամայականության և ոստիկանական արյունալի գազանությունների թագավորություն։

Խաղաղության և դեմոկրատիայի կողմնա-

կիցների հզոր ճակատը գլխատելու և անհաբեկելու ռեակցիայի փորձերին որպես պատասխան՝ ամբողջ Ֆրանսիայում բողոքի ալիք է բարձրացել։ Վերջերս գործադուլ հայտարարեց Ֆրանսիայի հանքագործների 70 տոկոսը։ Գործադուլներով են բռնկված երկրի երկաթուղիները, մետալուրգիական ձեռնարկությունները և արդյունաբերության մյուս ճյուղերը։

Մասսայական գործադուլներ տեղի ունեցան Փարիզում և նրա արվարձաններում, Մարսելում, Բորդոյում, Լիոնում, Ռուանում և Ֆրանսիայի ուրիշ շատ քաղաքներում։

Խաղաղության, ազատության և իրենց հայրենիքի անկախության համար մղվող պայքարում ֆրանսիայի աշխատավորները է՛լ ավելի են համախմբում իրենց շարքերը կոմունիստական պարտիայի շուրջը, խաղաղության և դեմոկրատիայի դրոշի շուրջը։ Բնորոշ է, որ հենց այդ օրերին, երբ Ֆրանսիայում է՛լ ավելի է մոլեգնում ֆաշիստական կամայականությունը, զգալիորեն ավելացավ կոմունիստական պարտիայի շարքերը մտնողների թիվը, ավելացավ «Յումանիտե»-ի տիրաժը։



Աշխատավորական Ֆրանսիան վճռական հակահարված է տալիս պատերազմի ամերիկյան և ֆրանսիական հրձիգներին, երկրի դեմոկրատական ուժերը, խաղաղության և ազատության ուժերը ճնշելու նրանց փորձերին։ «Ֆաշիզմը չի անցնի»— հայտարարում են Ֆրանսիայի աշխատավորները, որոնց հերոսական պայքարի շնորհիվ ֆաշիստական պրովոկացիան խայտառակ կերպով ձախողվեց և Ժակ Դյուկլոն ազատվեց բանտից։

Ֆրանսիական ռեակցիայի ոստիկանական-ֆաշիստական լկտի պրովոկացիաները ամենախոր զայրույթ են առաջ բերում բոլոր երկրների աշխատավորների մեջ։ Ցուցադրելով իրենց եղբայրական համերաշխությունը Ֆրանսիայի բանվոր դասակարգի հետ՝ խաղաղության կողմնակիցները բոլոր երկրներում պահանջում են բանտերից ազատել Ֆրանսիայի բոլոր հավատարիմ և քաջարի զավակներին՝ խաղաղության և դեմոկրատիայի մարտիկներին։

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Բյուրոյի հունիսի 9-ին հրապարակած դիմումի մեջ ընդգծվում է, որ «աշխարհի բոլոր

ժողովուրդները համերաշխ են խաղաղության համար ֆրանսիական ժողովրդի պայքարի հետ»։

Ֆրանսիական ժողովրդի նկատմամբ ծավալված լայն համերաշխության կամպանիան, որ ընդգրկել է աշխարհի բոլոր երկրները, կրկին ու կրկին վկայում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի հզոր ուժի մասին։

Բոլոր երկրների ազատասեր ժողովուրդները է՛լ ավելի են ուժեղացնում զգաստությունը՝ պատերազմի հրձիգների ոտնձգությունների դեմ մղվող պայքարում։ Ամբողջ երկրագնդի աշխատավորներին ոգեշնչում են մեծ առաջնորդ և ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի խոսքերը՝ «Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և դա պաշտպանեն մինչև վերջ»։

ՅԱ. ԳՈՒՇՉԻՆ

---



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՎՈԼԳԱ-ԴՈՆ ՋՐԱՆՑՔԻ ԳՈՐԾԱՐԿՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՆՈՐ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿՆ Է

1. Ռուսական մեծ գետերի՝ Վոլգայի և Դոնի միացումը սովետական մարդկանց խաղաղ և ստեղծագործական աշխատանքի արդյունքն է։

2. Վոլգա-Դոն ջրանցքի ժողովրդա-տնտեսական վիթխարի նշանակությունը։

3. Վոլգա-Դոն ջրանցքի շինարարությունը վառ վկայում է սոցիալիստական էկոնոմիկայի առավելությունը կապիտալիստականի նկատմամբ։

4. Արտադրական պլանների կատարումով և գերակատարումով նոր ավանդ ենք մտցնում կոմունիզմի համաժողովրդական կառուցումների մեջ։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքը կառուցված է»։ «Պրավդա»-ի 1952 թ. հուլիսի 10-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.», 1952 թ. հուլիսի 11-ի համարում։

«Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի կառուցողներից՝ մեծ առաջնորդ և ուսուցիչ, սովետական ժողովր-

դի ճաղթանակների կազմակերպիչ ու ոգեշնչող ընկեր *ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆԻՆ»։ «Ս. Հ.», 1952 թ. հուլիսի 11-ի համարում։*

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետում.— «Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի բացման մասին»: *«Ս. Հ.» 1952 թ. հուլիսի 11-ի համարում։*

## 2. ՍԵՂՄ ԺԱՄԿԵՏՈՒՄ ԵՎ ԱՆԿՈՐՈՒՍՏ ՀԱՎԱՔԵԼ ԲԵՐՔԸ, ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼ ՊԵՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*1. Բերքահավաքը անկորուստ և սեղմ ժամկետում ավարտելը, հացամթերումների պլանը ժամկետից շուտ կատարելը՝ կոլտնտեսությունների, ՄՏ կայանների և ռովխոզների տնտեսական- քաղաքական կարևորագույն խնդիրն է։*

*2. Աշխատանքային կարգապահության ամրապնդումը, բերքահավաքի աշխատանքի ճիշտ կազմակերպումը, գյուղատնտեսության առաջավորների փորձի տարածումը, մեքենաները ամբողջ կարողությամբ և բարձր արտադրողականությամբ օգտագործելը՝ բերքահավաքի հաջողության կարևոր պայմանն է։*

*3. Բերքահավաքի ժամանակ կորուստների դեմ պայքար ծավալելը՝ գյուղատնտեսության աշխատողների կարևոր խնդիրն է։*

*4. Ինչպիսի սոցիալիստական պարտավորություն է վերցրել իր վրա մեր կոլտնտեսությունը, բրիգադը և ինչպես ենք կատարում այն։*



### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Սեղմ ժամկետում և անկորուստ հավաքել հացահատիկի բերքը»։ *«Ս. Հ.», 1952 թվականի հուլիսի 4-ի առաջնորդողը։ «Ագիտատորի բլոկնոտ», 1952 թ., № 12։*

«Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա հզոր վերելքի համար»։ *«Ս. Հ.», 1952 թ. հուլիսի 6-ի առաջնորդողը։*

## 3. ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ՏԵՄՊԸ ԵՎ ՈՐԱԿԸ

*1. Բնակարանային և կուլտ-կենցաղային շինարարության 1952 թվականի պլանը ժամկետից շուտ և որակով կատարելը, ռեսպուբլիկայի կառուցողների կարևորագույն խնդիրն է։*

*2. Յուրաքանչյուր բրիգադայի և յուրաքանչյուր բանվորի կողմից արտադրական առաջադրանքների գերազանց կատարումը, առաջավոր փորձի լայն կիրառումը՝ պլանների հաջող կատարման գրավականն է։*

*3 Տեխնիկայի խնայողաբար օգտագործումը, շինարարական աշխատանքի ինքնարժեքի իջեցումը յուրաքանչյուր կառուցողի պարտականությունն է։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Բարձրացնել պարտիական աշխատանքի մակարդակը շինարարական հիմնարկներում»: *«Ս. Հ.» 1953 թ. փետրվարի 26-ի առաջնորդողը։*

«Առաջավորների օրինակով պետք է աշխատեն

բոլոր կառուցողները»։ *«Ս. Հ.», 1952 թ. հուլիսի 5-ի համարում։*

### 4. ԿԵՐԻ ՍԻԼՈՍԱՑՄԱՆ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ՀԱՆՐԱՅԻՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ ՊԱՅՄԱՆՆ Է

*1. Հանրային անասնապահության կերի կայուն բազայի ստեղծումը, կերի սիլոսացման պլանի կատարումը և գերակատարումը՝ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների առաջնահերթ խնդիրն է։*

*2. Յուրաքանչյուր կոլտնտեսականի կողմից սիլոսանյութերի ցանքերի խնամքի և կերի հայթայթման նորմաների ամենօրյա կատարումն ու գերակատարումը՝ կերի սիլոսացման պլանի կատարման գլխավոր պայմանն է։*

*3. Լայն ծավալենք կոլտնտեսականների, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողների սոցիալիստական մրցությունը՝ կերի սիլոսացման պլանի կատարման և գերակատարման համար։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. *Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետում—* «Հայկական ՍՍՌ կոլտնտեսություններում և սովխոզներում 1952 թվականին խոտհունձն ու կերի սիլոսացումը անցկացնելու մասին», *«Ս. Հ.», 1952 թ. հունիսի 4-ի համարում։*

2. Ընդարձակել ճանրային անասնապահության կերի բազան»։ *«Ս. Հ.», 1952 թ. հունիսի 1-ի համարում։*

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*ՎԻԼԻՍ ԼԱՑԻՍ.—* «Փոթորիկ»— *Ստալինյան մրցանակի արժանացած վեպ, գիրք 2-րդ. 755 էջ, տիրաժ 5000, գինը 12 ռ. 50 կ.*

*Ն. ՄՐԵՎԼԻՇՎԻԼԻ.—* «Խառատանց օջախը» *(վիպակ)։ Հայպետհրատ, 113 էջ, գինը 3 ռ. 15 կոպ.։*

«Հայ ժողովրդի բանահյուսություն».— *(Քրեստոմատիա)։ Գրքում զետեղված է մինչհոկտեմբերյան և սովետահայ բանահյուսությունը։ ՀՍՍՌ Հեռակա մանկավարժական ինստիտուտի հրատարակություն, 593 էջ, տիրաժ 1500, գինը 7 ռ. 20 կոպ.։*

*Ա. ԱՐԱՐԱՏՅԱՆ.—* «Բույսերի վեգետատիվ բազմացումը»: *Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հրատարակություն, 131 էջ, գինը 2 ռ. 50 կոպ.։*

*Մ. ՍԱՐԳՍՅԱՆ.—* «Լեոնարդո *դա Վինչի» (կյանքն ու գործունեությունը)։ Երևանի Վ. Մ. Մոլոտովի անվան Պետական համալսարանի հրատարակություն, 22 էջ, գինը 30 կոպ.։*

---

Խմ. խմբագրի՝ Մ. Տ. ՔՈՉԱՐՅԱՆ

